## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Առնուվիլ – Սարսէլի Հ. Յ. Դ. Վարդան Խաչակոմիտէի երկրորդ հանգանակութեան ցանկը Սարսէլի հայրենակիցներէն, Թէհլիրեան սրահին համար:

| | Ն.Ֆ. |
|---|---|
| Տիկին Մարիամ Կարապետեան | 10 |
| Տիկին Մաքրուհի Մինասեան | 10 |
| Տիկին Էլմոնէ Կ. Երանեան | 20 |
| Տիկ. Արուսեակ Ճիհանեան | 10 |
| Տիկ. Թագուհի Անէմեան | 10 |
| Պ. Կէօզամեան | 20 |
| Պ. Խաչիկ Խաչիկեան | 20 |
| Պ. Գաբրիէլ Սարաֆեան | 10 |
| Պ. Յարութիւն Յակոբեան | 10 |
| Պ. Ժիրայր Գումրուչեան | 10 |
| Պ. Ղազար Ներկարարեան | 10 |
| Պ. Մանուկ Ոսկանեան | 10 |
| Պ. Ստեփան Սեմէրճեան | 10 |
| Պ. Սարգիս Պարսիկեան | 10 |
| Պ. Յակոբ Երանեան | 20 |
| Պ. Սահատէթեան | 5 |
| Պ. Արամ Խաչատուրեան | 5 |
| Պ. Յարութիւն Շաքարեան | 5 |
| Պ. Նշան Գոչեան | 5 |
| Պ. Սերոբ Աւետիսեան | 5 |
| Պ. Մանուէլ Պետրոսեան | 5 |
| Պ. Յակոբ Մելիտոնեան | 5 |
| Մարթինի Թօփալեան ընտանիք | 5 |
| Պօղոսեան ընտանիք | 5 |
| Պ. Պետրոս Մանուկեան | 5 |
| Հալէպեան ընտանիք | 5 |
| Պ. Սուրէն Տէրտէրեան | 3 |
| Տիկին Սիրարփի Անդրէասեան | 5 |
| Պ. Մովսէս Պէրքպէչեան | 5 |
| Պ. Նուպար Հանչէրեան | 5 |
| Պ. Յովհաննէս Հանչէրեան | 5 |
| Պ. Տիգրան Հանչէրեան | 5 |
| Տիկին Դաճ Դաճեան | 5 |
| Ոմն | 1 |
| Պ. Նշան Փափազեան | 5 |
| Գումար | 284 |

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Կոընապլի Կապ. Խաչը ջերմագին շնորհակալութիւն կը յայտնէ «Մայրերու Օրը» ի նպաստ իր զոյգ դպրոցներուն եղած հանգանակութեան մասնակցող արտօնաւ հայրենակիցներուն (գումարը 450 Ն. Ֆ.) եւ մրցանակաբաշխութեան հանդէսին, ինքնաբուխ կերպով նուիրատուութեան մասնակցող հետեւեալ հայրենակիցներուն.—*

*Հայ Մարտիկներու Միութիւն 30 Ն. Ֆ., Տէր եւ Տիկ. Մ. Կիւմիւշեան, Տէր եւ Տիկ. Ալիքեան, Տէր եւ Տիկ Ճերմակեան, Տիկ. Հ. Իւլրիշ, Օր. Սիսլեան 20ական Ն. Ֆ.; Պ. Կ. Մաաանճեան, Տէսինէն Պ. Սարգիս Կարապետեան, Տէր եւ Տիկին Մարաշլեան, Տէր եւ Տիկ. Միքայէլեան, Տէր եւ Տիկ. Զատիկեան, Տէր եւ Տիկ. Խ. Արապեան, Տէր եւ Տիկ. Ս. Կարմիրեան, Տէր եւ Տիկ. Մարգարեան, Տէր եւ Տիկ. Յ. Թիւթիւնճեան, Տէր եւ Տիկ. Մ. Փիլաւճեան, Տէր եւ Տիկ. Վ. Բաբախեան, Տէր եւ Տիկ. Անտոնեան, Տիկ. Տիգրանուհի Լիոտիս, Տիկ. Ուզուըլեան, Տիկ. Պօյաճեան, Պ. Բոպէր Քիւրքճեան, փոքրիկն Քիւրէճեան, փոքրիկն Ժօժօ 10ական Ն. Ֆ.; Տէր եւ Տիկ. Ասլանեան, Տէր եւ Տիկ. Սիրաբօնեան 5ական Ն. Ֆ.:*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի կը պատարագէ եւ կը քարոզէ Երուսաղէմի վանքին միաբան եւ Լոնտոնի մէջ աստուածաբանութեան ուսանող Գեր. Տ. Արիս վրդ. Շիրվանեան:*

*× Հայաստանէն Շաւարշ Աւետիքի Յակոբեան կը փնտռէ իր եղբայրը՝ Վաչական Յակոբեան: Դիմել եկեղեցի:*



## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

### ՆԻՍԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ* Նիսի Հ. Յ. Դ. Գէորգ Չաւուշ *խումբին, հովանաւորութեամբ* Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէին:

*Կիրակի*, Օգոստոս 6, *ամբողջ օրը*, Փլաթօ տիւ Մոն Պառոն, Սիթ Անշանբէնի *անտառներ եւ ծառախիտ պարտէզներուն մէջ:*

*Անձրեւի պարագային, գեղեցիկ սրահ:*

*Կը նախագահէ Ընկ.* ՇԱՀԱՆ ՋՕՏԵԱՆ:

*Կը խօսի Ընկ.* ԿԱՐՕ ՅՈՎՍԷՓԵԱՆ:

*Գեղարուեստական բաժին, Մարսէյլինոր Սերունդին կողմէ:*

*ՄԱՆՕԹՈՒԹԻՒՆ*

*1.— Մասնաւոր օթոքար մը՝ Մատըլէնէն կը մեկնի առաւօտեան ժամը 9.30ին: Փլաս Մասենա կը հասնի՝ Քազինոյին առջեւ, եւ հոնկէ կ'երթայ Փլաթօ տիւ Մոնպարօն:*

*2.— Թէ՛ էլ էնի տեւական եւ կանոնաւոր սպասարկութիւն: Պուլվար Ժան-Ժօռէս, Սինեմա Քազինոյին առջեւէն առնել 13 թիւը: Առաւօտուն ժամը 8.30ին, 9.30ին, 10.30ին: Իսկ կէսօրէ ետք ամէն կէս ժամը անգամ մը:*

*3.— Առանձին ինքնաշարժով եկողները պէտք է առնեն միջին Քորնիշը եւ Քոլ տը Վիլֆրանշ չհասած, աջ դառնան եւ երթան մինչեւ Փլաթօ:*

×

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Խանասորի արշաւանքին 64րդ տարեդարձի առթիւ, Վիէնի Հ. Յ. Դ. Անի կոմիտէն կազմակերպած է մեծ դաշտահանդէս մը այս կիրակի,* Լա Թապուրէթի *հովտուն եւ ընդարձակ դաշտին վրայ:*

*Կը նախագահէ ընկ.* Յ. Ուզունեան,

*Կը խօսի Պ. Կ.* Տէրմոյեան:

*Գեղարուեստական բաժին:*

*Առատ կերուխում:*

*Օթոքարը կը մեկնի կիրակի ժամը 9ին, 11ին, 14,15ին սովորական ճամբով:*

*Վերադարձ ժամը 20ին:*





## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ԳԱՑՈՂ

### ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

*Մեր բաժանորդներու արձակուրդի շրջանը, արձակուրդի շրջանն է նաեւ «Յառաջ»ի պաշտօնէութեան: Այդ իսկ պատճառով թերթիս վարչութիւնը Յուլիսին եւ Օգոստոսին, սովորականէն շատ աւելի ծանրաբեռնուած է եւ ջերմօրէն կը խնդրէ իր հաւատարիմ բաժանորդներէն, որ աւելի չծանրաբեռնեն իր գործը հասցէներու առժամեայ փոփոխութիւններով:*

*Յառաջ միշտ իր կարելին կ'ընէ գոհացում տալու համար իր ընթերցողներուն, բայց կը խնդրէ նաեւ որ անոնք չդժուարացնեն իր գործը:*

*Այս տարի, վարչութիւնը որոշած է ընթացք տալ միայն* ԲԱՑԱՌԻԿ *եւ* ՍՏԻՊՈՂԱԿԱՆ *դիմումներու հետեւեալ պայմաններով.— դիմումները պէտք է ըլլան գրաւոր, ընթացք չի տրուիր հեռաձայնով եղած դիմումներուն: Կցել հինգ Ն. Ֆ. եւ սովորական հասցէն: Դիմող բաժանորդը պէտք է վճարած ըլլայ ընթացիկ տարեշրջանը (1961):*

×

*Միայն արձակուրդի շրջանին համար, բաժանորդ արձանագրուողներու սակն է.*

Ֆրանսա.— *Ամսական* 7 Ն. Ֆ.

*Արտասահման* 10 Ն. Ֆ.:

*Շնորհակալութեամբ* ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՏԱՐԵԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

### ԷՔՍ–ԼԷ–ՊԷՆԻ ՄԷՋ

*Աստուածածնայ տօնին առթիւ, Օգոստ. 13ին, միշտ նոյն տեղը կը կազմակերպուի դաշտահանդէսը:*

*Հաւաքատեղի* փառքին *քով, օթոքարի կայարանին շուրջը ժամը 9էն սկսեալ, բարձրանալ* Բելֆիւրիէի *մեկնակէտն եւ իջնել քիչ վարը հայկական սրճարանը.*

*Պատարագ ժամը 10.15ին, խաղողօրհնէք ետք, ճաշ շրջակայ դաշտին պաղ աղբիւրին մօտ: Զանազան ըմպելիներ, չամփուրով խորոված, եւ առատ ձմերուկ ու սեխ: Փափաքողները կրնան իրենց ուտելիքը միասին բերել:*

*Ճաշէն ետք ճառ եւ տեղեկատուութիւն:*

*Գեղարուեստական բաժին սիրայօժար մասնակցութեամբ Տիկին Գալթանճեանի, Տիկին Պարգեւուհիի եւ պարուհի Օր. Թարոնի:*

*Ծոխ վիճակահանութենէ մը ետք պիտի ցրուուին Խորէն Նարպէյ արքի «Քրիստոնէական գիտելիքներու» գրքոյկներ:*

*Կը հրաւիրուի շրջակայքի Հայութիւնը:*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Տիկ. Ա. Ասլանեան իր զաւկին էմիլի ընդ. Օր. Ալիս Սամուէլեան ամուսնութեան առթիւ կը նուիրէ 50 Ն. Ֆ.։*

*Այրի Տիկին Գայեանէ Գասապեան, Տիկին Արմենուհի Գասապեան, Տէր եւ Տիկին Շահեան եւ զաւակները (Պոլիս), Տիկ. Նուարդ Գոթոլօն եւ զաւակները (Պոլիս), այրի Տիկ. Կոթոլօնի եւ աղջիկը, Տէր եւ Տիկ. Հ. Կոթողեան, Տէր եւ Տիկին Վ. Կոթողեան, Տէր եւ Տիկին Գ. Կոթողեան եւ աղջիկը, Տէր եւ Տիկին Հ. Օրմանճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Գ. Անդրէասեան եւ զաւակները (Հայաստան), Տէր եւ Տիկ. Մ. Խանճեան եւ զաւակները (Հայաստան), Տէր եւ Տիկ. Հ. Մատուրեան եւ աղջիկը, այրի Տիկին Մանտալեան, Տէր եւ Տիկ. Մ. Աչճեան եւ զաւակները կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, եղբօր, քեռայրին եւ ազգականին*

**ԱՐՄԵՆԱԿ ԳԱՍԱՊԵԱՆԻ**
(Կիրասոնցի)

*մահը որ տեղի ունեցաւ Օգոստ 3ին Սէն Լուի հիւանդանոցը, յետ վիրաբուժական գործողութեան։*

*Յուղարկաւորութիւնը տեղի պիտի ունենայ այս երեքշաբթի (Օգոստ. 8), ժամը 16,30ին, Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, 15 Rue Jean Goujon, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Անիէռի հին գերեզմանատունը։*

---

**ՖՐ.ԿԱԳ. ԽԱՉԻ ՊԵԼՖՈՆԹԷՆԻ ԿԱՑԱՆԻՆ ՆՈՒԷՐՆԵՐ ԱՑՑԵԼՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ**

*Պ. Պետրոսեան (Փարիզ) 100 Ն. Ֆ., Պ. Ցօնիկեան եւ անբաժանելի Պ. Բօլայեան (Փարիզ) 20, Պ. Մաղաքեան (Լիոն) 20, Պ. Ա. Խաչատուրեան (Փարիզ) 50 Ն. Ֆ.։*

## ՆՈՒԷՐ

*Տիկին Մարիամ Ակոնայեան 20 Ն. Ֆ. կը նուիրէ Կապոյտ Խաչի կայանին, Տիկին Քիւրքճեանի մահուան առթիւ։*
*(Ստանալ «Յառաջ»էն)։*

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

*Կիրակի 13 Օգոստոս, Տօն Վերափոխման Սուրբ Աստուածածնի,*

*ԳԵՐԱՊԱՏԻՒ ԿԱՐԱՊԵՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՄԱՏՈՒՆԻ,*

*Առաւօտեան ժամը 10,30ին պիտի մատուցանէ Հայրապետական ձայնաւոր պատարագ եւ պիտի կատարէ* խաղողօրհնէքի *արարողութիւնը։*

*Երկուշաբթի, 14 Օգոստ., Օր Մեռելոց, հոգեհանգստեան պատարագ ժամը 10,30ին։*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)





## ՏԱՐԵԿԱՆ
## ԲԱՑԱՌԻԿ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ
### ԷՔՍ-ԼԷ-ՊԷՆԻ ՄԷՋ

*Աստուածածնայ տօնին առթիւ, Օգոստ. 13ին, միշտ նոյն տեղը կը կազմակերպուի դաշտահանդէսը։*

*Հաւաքատեղի* փառքին *քով, օթօքարի կայարանին շուրջը ժամը 9էն սկսեալ, բարձրանալ* Թէլէֆէրիքի *մեկնակէտն եւ իջնել քիչ վարը հայկական սրճարանը։*

*Պատարագ ժամը 10,15ին, խաղողօրհնէք եւս, ճաշ շրջակայ դաշտին պաղ աղբիւրին մօտ։ Զանազան ըմպելիներ, չամփուրով խորոված, եւ առատ ձմերուկ ու սեխ։ Փափաքողները կրնան իրենց ուտելիքը միասին բերել։*

*Ճաշէն ետք նուագ եւ տեղեկատուութիւն։*

*Գեղարուեստական բաժին* *սիրայօժար մասնակցութեամբ Տիկին Գայթանճեանի, եւ պարուհի Օր. Թարոնի։*

*Ճոխ վիճակահանութենէ մը ետք պիտի ցրուուին Խորէն Նարպէյ արք.ի «Քրիստոնէական գիտելիքներու» գրքոյկներ։*

*Կը հրաւիրուի շրջակայքի Հայութիւնը։*

## ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

*Լիոնի Ազգ. Միութիւնը կը յայտարարէ թէ Ս. Աստուածածնայ տօնին առթիւ, կիրակի (Օգոստ. 13) հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի Լիոնի եկեղեցւոյ մէջ։ Յաւարտ պատարագի, մատաղօրհնութիւն եւ աւանդական խաղողի օրհնութիւն պիտի կատարուի։*

*Կը հրաւիրուի Լիոնի եւ շրջաններու բարեպաշտ հայ ժողովուրդը։*

*Այն բոլոր բարեպաշտ ազգայիններ որոնք կը փափաքին մասնակցիլ մատաղին, հաճին իրենց նուէրները արձանագրել տալ եկեղեցւոյ բանկալը։*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Տէր եւ Տիկին Հրանտ Սամուէլեանէ՝ Բարսեղ Տամլամեանի մահուան առթիւ 30 Ն. Ֆ.։*

## ԱՆԾԱՆՕԹ ԶԻՆՈՒՈՐԻՆ ԲՈՑԸ

*Հայ Կամաւորներու եւ Նախկին Մար-տիկներու Միութիւնը հրաւիրուած է «Բոցի Կոմիտէ»ին կողմէ Անծանօթ Զին-ուորին գերեզմանին բոցը արծարծելու այս կիրակի, Օգոստոս 13 ժամը 18,30ին։ Հաւաքուիլ — ժամը 18ին Էթուալի հրա-պարակին Թեռ-Փլէնին վրայ։*

*Կը հրաւիրուին բոլորը իրենց ներկա-յութեամբ յարգելու համար Անծանօթ Զինուորին յիշատակը, որ այդ նուիրա-կան շիրիմին տակ, կը խորհրդանշէ զէն-քի բոլոր ընկերները, ինկած Ֆրանսական հայրենիքին ծառայութեան մէջ։*





## ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

### *ԽԱՂՈՂԻ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ*

*Ս. Աստուածածնի Վերափոխման Տօնին առթիւ, այս կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ պիտի մատուց-ուի հանդիսաւոր պատարագ եւ պիտի կա-տարուին խաղողի աւանդական օրհնու-թիւնն ու բաշխումը։*

*Բշ. օր 14 Օգոստ., պատարագ Մեռե-լոցի։*

*Հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ ըլլալ։*

×

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր Եկեղեցիի Վարչութիւնը կը ծա-նուցանէ թէ այս կիրակի Ս. Աստուա-ծածնի տօնը կը կատարուի հանդիսաւոր արարողութեամբ, ինչպէս Բշ. օր Մեռե-լոցի առիթով Հոգեհանգիստի պաշտօնը։ Խաղողի նուիրատուներէ կը խնդրուի վերջին պահուն չմնալ։*

*× Սոխումէն (Վրաստան) Գրիգոր Մար-տիկի Գրիգորեան կը փնտռէ իր որդին Լեւոնը։ Դիմել եկեղեցի։*

×

*Լիոնի Ազգ. Միութիւնը կը յայտարա-րէ թէ Ս. Աստուածածնայ տօնին առթիւ, կիրակի (Օգոստ. 13) հանդիսաւոր պա-տարագ պիտի մատուցուի Լիոնի եկեղեց-ւոյ մէջ։ Յաւարտ պատարագի, մատաղ-օրհնութիւն եւ աւանդական խաղողի օրհ-նութիւն պիտի կատարուի։*

*Կը հրաւիրուի Լիոնի եւ շրջաններու բարեպաշտ հայ ժողովուրդը։*

*Այն բոլոր բարեպաշտ ազգայինները որոնք կը փափաքին մասնակցիլ մատա-ղագինի, հաճին իրենց նուէրները արձա-նագրել տալ եկեղեցւոյ բանկալը։*

×

### *ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ*

*Այս կիրակի, Տօն Ս. Աստուածածնայ, հանդիսաւոր պատարագ կը մատուցանէ Զաւէն վրդ. Արզումանեան։ Յաւարտ պատարագի խաղողի օրհնութիւն։*

*Կը հրաւիրուի հաւատացեալ ժողո-վուրդը։*

×

### *ՏԷՍԻՆԻ ՄԷՋ*

*Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի առաւօտ ժա-մը 8,30ին Ս. Աստուածածնայ Վերափոխ-ման տօնին առթիւ պատարագ պիտի մա-տուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ ե-կեղեցւոյն մէջ։ Կը պատարագէ տեղւոյն հոգեւոր հովիւ Տէր Վարագ Քհնյ. Աւագ-եան, կը քարոզէ Արիս աբեղայ Շիրկան-եան։*

*Հոգեհանգստեան պաշտօն պիտի կա-տարուի հանգուցելոց հոգւոյն, ինչպէս նաեւ մատաղ եւ խաղողի օրհնութիւն։*

*ՈՒՐԲԱԹ կէսօրէ վերջ ժամը 4ին ոչ-խարներու գնում եւ աղի օրհնութիւն, իսկ ՇԱԲԱԹ կէսօրէ վերջ ժամը 17ին, Լոյս Ջուարթի եւ Երեկոյեան ժամերգու-թիւն։*

×

### *ՓՈՆ ՏԸ ՇԵՐԻԻ ՄԷՋ*

*Վերափոխումն Աստուածածնայ տօնին առթիւ պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի յառաջիկայ ե-րեքշաբթի առաւօտ, Ս. Գրիգոր Լուսա-ւորիչ մատրան մէջ, նաեւ աւանդական խաղողի օրհնէնքը։*

×

### *ԼԱ ՍԻՈԹԱՅԻ ՄԷՋ*

*Ս. Կարապետ եկեղեցւոյ հոգաբարձու-թիւնը կը ծանուցանէ թէ երկուշաբթի ի-րիկուն ժամը 6ին, աղի եւ խաղողի օրհ-նութիւնը պիտի կատարուի մատուռին մէջ, եւ երեքշաբթի առաւօտ ժամը 8ին, պատարագ եւ հոգեհանգիստ։ Նոյն օրը կէսօրէ վերջ՝ այց գերեզմանատունը։*

×

### *ԱՌՆՈՒՎԻԼ*

*Առնուվիլի Վարագայ Սուրբ-Խաչ եկե-ղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի Վերափոխումն Ս. Աստ-ուածածնի տօնին առթիւ պիտի պատա-րագէ եւ քարոզէ Տ. Ներսէս վարդապետ Բաղտճեան։ Յաւարտ պատարագի տեղի պիտի ունենայ աւանդական խաղողօրհ-նէնք։*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԽՄԲԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

### Ֆ. Կ. Խ.Ի ՊԵԼՖՈՆԹԷՆԻ ԿԱՅԱՆԻՆ

*Կազմակերպուած Ֆ. Կ. Խ.ի Տէսինի մասնաճիւղին կողմէ, այս Հինգշաբթի օր։ Օթոքարը կը մեկնի Տէսինէն առա-ւօտեան ժամը 7ին։ Ներկայ պիտի ըլլայ եւ պիտի աղօթէ Տէսինի հովիւ Վարագ Քհնյ Աւագեան։*

*Արձանագրութեանց եւ այլ մանրամաս-նութեանց համար դիմել Գ. Վահան Յա-կոբեանի եւ Կ. Խաչի վարչական ան-դամներուն։*

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

*Կիրակի 13 Օգոստոս, Տօն Վերափոխ-ման Սուրբ Աստուածածնի,*

*ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ԿԱՐԱՊԵՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՄԱՏՈՒՆԻ,*

*Առաւօտեան ժամը 10,30ին պիտի մա-տուցանէ Հայրապետական ձայնաւոր պա-տարագ եւ պիտի կատարէ խաղողօրհնէնքի արարողութիւնը։*

*Երկուշաբթի, 14 Օգոստ., Օր Մեռե-լոց, հոգեհանգստեան պատարագ ժամը 10,30ին։*





## ԽՄԲԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

### Ֆ. Կ. Խ.Ի ՊԵԼՖՈՆԹԷՆԻ ԿԱՅԱՆԻՆ

*Կազմակերպուած Ֆ. Կ. Խ.ի Տէսինի մասնաճիւղին կողմէ, այս Հինգշաբթի օր: Օթոքարը կը մեկնի Տէսինէն առաւօտեան ժամը 7ին: Ներկայ պիտի ըլլայ եւ պիտի աղօթէ Տէսինի հովիւ Վարդ. Քհնյ. Աւագեան:*

*Արձանագրութեանց եւ այլ մանրամասնութեանց համար դիմել Պ. Վահան Յակոբեանի եւ Կ. Խաչի վարչական անդամներուն:*

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*Այրի Տիկին Գայծառ Սամուէլեանի (Մարսէյլ) մահուան առթիւ, իր զաւակները, փոխան ծաղկեպսակի, կը նուիրեն 200 Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Անտէր Հիւանդներու Ֆոնտին:*

×

*Այրի Տիկին Փերուզ Մոստիչեան կը նուիրէ 20 Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Ֆենանվիլիէի օդափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի, ողբացեալ Բաբգէն Տամլամեանի մահուան առթիւ:*

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանի* 1961 – 1962 *տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են. ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է փութան այժմէն իսկ դիմում ընել հաստատութեան տնօրէնութեան:*

*Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ: Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ.*

Ա) Ֆրանսականը, *որ տասցի կերպով կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ* պրըվէի եւ պագալորէայի:

Բ) Հայկականը, *որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ:*

*Հեռաձայն* 927 – 01,72

*Աշակերտուհիներ կ'ընդունի 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան.—*

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)

## ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

ԼԸ ՓԷՔ

ԲԱՑՈՒԱԾ ԵՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1961 – 1962

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ

*Ուսման ծրագիրն է դասական ընթացք* (բուր քլասիք):

*Պայմաններու եւ որեւէ լուսաբանութեան համար դիմել գրաւոր կամ հեռաձայնով տեսչութեան:*

École Apostolique Arménienne
3, Av. de Grandchmp
LE PECQ (S. et O.) Tél. 963-01-72

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Երկու կիներ եւ երկու այրեր կրթական հաստատութեան մը մէջ ծառայելու համար (հանդերձատուն, խոհանոց եւ ճաշասենեակ):*

*Դիմել անձամբ Յառաջի վարչութեան:*



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

### ՓՈՆ ՏԸ ՇԵՐԻԻ ՄԷՋ

*Վերափոխումն Աստուածածնայ տօնին առթիւ պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի յառաջիկայ երեքշաբթի առաւօտ, Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ, նաեւ աւանդական խաղողի օրհնէնքը:*

×

### ԼԱ ՍԻՈԹԱՅԻ ՄԷՋ

*Ս. Կարապետ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ երկուշաբթի իրիկուան ժամը 6ին, աղի եւ խաղողի օրհնութիւնը պիտի կատարուի մատուռին մէջ, եւ երեքշաբթի առաւօտ ժամը 8ին, պատարագ եւ հոգեհանգիստ: Նոյն օրը կէսօրէ վերջ՝ այց գերեզմանատունը:*





## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՍԵՒՐ*

### 1961-1962

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ:

*Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքներու գործը դիւրացնելու համար կը յանձնարարենք, որ վարժարան առաջնորդեն երախան դպրոցական եւ բժշկական վկայականներով միասին: Փարիզէն դուրս գտնուողները գրաւոր դիմումին միացնեն վերոյիշեալ վկայականները:*

*Պայմաններու համար դիմել՝ գրաւոր կամ հեռաձայնով.—*

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Պօղոսեան ընտանիքը (Սէն Ժերմէն-ան-Լէյէն) 20 Ն. Ֆ. կը նուիրէ Մոնմորանսիի հանգստեան տան, Բարսեղ Տամլամեանի մահուան առթիւ: (Ստանալ Յառաջէն):

## ԽՄԲԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

### Ֆ. Կ. Խ.Ի ՊԸԼՖՈՆԹԷՆԻ ԿԵՑԱՆԻՆ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խ.ի Տէսինի մասնաճիւղին կողմէ, այս Հինգշաբթի օր: Օթոմաբը կը մեկնի Տէսինէն առաւօտեան ժամը 7ին: Ներկայ պիտի ըլլայ եւ պիտի աղօթէ Տէսինի հովիւ Վարագ քհնյ Աւագեան:

Արձանագրութեանց եւ այլ մանրամասնութեանց համար դիմել Պ. Վահան Ցոլակօբեանի եւ Կ. Խաչի վարչական անդամներուն:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի՝ ութերորդ օր Վերափոխման:

Ժամը 10,30ին ձայնաւոր պատարագ պիտի մատուցանէ

ԳԵՐՊ. ԿԻՒՐԵՂ ԶՕՀՐԱՊԵԱՆ

Ցունաստանի եւ Թէզիրէի հայ Կաթողիկէներու նախկին առաջնորդը:



## ՑԱՐԱԼԷԶՆԵՐՈՒ ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Ա. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԳԻՆ 7 Ն. Ֆ.

Դիմել՝ ՅԱՌԱՋԻՆ

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Երկու կիներ եւ երկու այրեր կրթական հաստատութեան մը մէջ ծառայելու համար (հանդերձատուն, խոհանոցի եւ ճաշասենեակի):

Դիմել անձամբ Յառաջի վարչութեան:









Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

### ԱԼՖՈՐՎԻԼԻ ՆՈՒԻՐԱՏՈՒՆԵՐՈՒ ՑԱՆԿԸ

Վանիկ Թիւզիրեան, Մկրտիչ Տօտող-եան, Զատիկ Յովհաննէսեան, Նշան Մինասեան, Աստուր Սարգիսեան, Անդրանիկ Խաչատուրեան, Վրէժ Թադէոսեան, Եղիսաբէթ Գումրույեան, Գրիգոր Քէպէլեան, Տիկ. Պերճուհի Պողոսասարեան, Տրդատ Աղամեան, Արտաշէս Զապոնեան, Յար. Փափազեան, Մուրատ Մուրատեան, Յովհաննէս Չէքոյեան, Յովհ. Կիւրեղեան, Արամայիս Յակոբոսեան, Զարեհ Նալպանտեան, Նօէմզար Պէրպէրեան, Ոսկիան Սիմասարեան, Պաղտիկ Քիլիճեան, Տէր-Պարսամեան ընտանիք, Թովմաս Խաչերեան, Աւետիս Քիւփէլեան, Վարդան Կակոյեան, Քրիստ Նէտիլեան, Յարութիւն Բարունեան, Ժագ Գազանճեան, Մելքիսեթէք Տօնիկեան, Գարբիէլ Նէտիլեան, Կարպիս Աբգարեան, Յակոբ Սիմոնեան, Գրիգոր Կոլիճեան, Մանուկ Մանուկեան, Մկրտիչ Ագաշեան, Կորիւն Բարխեան, Վազգէն Գայմաքեան, Ժորժ Սինանեան, Նուպար Սիսոյեան, Ազատ Խաչատուրեան, Աւետիս Յովհաննէսեան, Քրիստափոր Շատեան, Իսահակ Պատուականեան, Վարդուհի Յովհաննէսեան, Աւետիս Մուշմուլեան, Յար. Յովսէփեան, Գէորգ Նալպանտեան, Յակոբ Զօքարեան, Խաչիկ Սիմասարեան, Գասպար Թիւյսիւզեան, Սիւզան Այչուկեան, Ոմն, Աղասնի Ոսկանեան, Էլիզ Էմմանուէլեան, Զարուհի Սմբատեան, Թադէոս Թադէոսեան, Թորգոմ Տէր-Յակոբեան, Խաչիկ Սեմէրճեան, Գրիգոր Պաղտասարեան, Յուսիկ Մաճալեան, Արուէն Պէրպէրեան, Համբարձում Միքայէլեան, Ստեփան Զաքարեան, Պ. եւ Ա. Կոչեան, Մովսէս Բարխեան, Տիկ. Հանրմիկ Պետրոսեան, Մկրտիչ Աղամեան, Արաքսի Տէր-Արէլեան, Հռիփսիմէ Մանուկեան, Կարապետ Աբգարեան, Յակոբ Խաչիկեան, Մինաս Զօքարեան, Յակոբ Աշըգեան, Տոքթ. Մեսաքեան, Մկրտիչ Պէլեան, Փիէր Փափազեան, Գալուստ Տէր-Աբէլեան, Հռիփսիմէ Մկրտիչ-օղլու 10ական Ն. Ֆրանք, Տիկ. Հայկանուշ Քնարեան 7,50 Ն. Ֆ. Տիկ. Մարի-Ռոզ Սալթա 6, Ղազարոս Խաչատուրեան եւ Այրի Տիկ. Սեմէրճեան 5ական Ն. Ֆ.:

(Շար.)

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՍԵՒՐ

### 1961-1962

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ:

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքներու գործը դիւրացնելու համար կը յանձնարարենք, որ վարժարան առաջնորդեն երախան դպրոցական եւ բժշկական վկայականներով միասին: Փարիզէն դուրս գտնուողները գրաւոր դիմումին միացնեն վերոյիշեալ վկայականները:

Պայմաններու համար դիմել՝ գրաւոր կամ հեռաձայնով.—

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՐՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Յակոբ եւ Զարուհի Նապուլեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի օր, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ Նապուլեան եւ Բալագեան գերդաստաններու համայն ննջեցելոց յիշատակին։

Կը հրաւիրուին իրենց յիշատակը յարգողները։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Գայեանէ Գասապեան ինչպէս նաեւ Գասապեան, Գոթոլոն, Կոթոլոնի, Կոթողեան, Օրմանճեան, Անդրէասեան, Խանճեան, Մատուրեան, Մանուելեան եւ Աչճեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ

ԱՐՄԵՆԱԿ ԳԱՍԱՊԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ։

## ՆՈՒԷՐ

Ս. Աստուածածնայ տօնին առթիւ խաղողի նուիրատուներ Փարիզի Ս. Յովհ.Մկրտիչ եկեղեցւոյ

Տէր եւ Տիկին Աթատեան 2 կողով, Տիկին Նազենիկ Սարաֆեան 1 կողով, Պարոններ Նոտարեան եղբայրներ 1 կողով, Տէր եւ Տիկ. Քիրէմիթճեան 1 կողով, Տէր եւ Տիկ. Գավէզեան 2 կողով, Պ. Նապուլեան 2 կողով, Տէր եւ Տիկ. Էլիզա Շահինեան 1 կողով, Պ. Փայլակ Միքայէլեան, Տիկին Նուրիցա Ժամկոչեան, Պ. Մարտիկ Սարեան, այրի Տիկին Սրբուհի Օհաննէսեան 1ական կողով, Պ. Մանուկ Հայրապետեան 2 կողով, Պ. Աճէմօֆ, Տիկ. Ազնիւ Քէչիչեան 1ական կողով, Տիկին Մուրատեան 3 կողով, Տէր եւ Տիկին Յակոբ Ալեքսանեան, Տիկ. Ֆէրմանճեան, Պ. Սերոբեան, Տիկ. Զաղարեան, Նուպար Տէր-Ղուկասեան, Օր. Մառանեան Արմենուհի 1ական կողով։

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

Այս կիրակի՝ ութերորդ օր Վերափոխման։

Ժամը 10,30ին ձայնաւոր պատարագ պիտի մատուցանէ

ԳԵՐՊ. ԿԻՒՐԵՂ ԶՕՀՐԱՊԵԱՆ

Յունաստանի եւ Ճէզիրէի հայ Կաթողիկէներու նախկին առաջնորդը։

## ԿՈՉ՝ ՄԱՐՍԷՅԼԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ ՏԱՐԵՑ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

Փարիզի Ազգատախնամի վարչութիւնը, Մարսէյլի Ազգատախնամէն, ինչպէս նաեւ Հարաւային Ֆրանսայի Հայոց Առաջնորդարանէն, ստացած է առանձին նամակներ, որոնցմով տրամադրութիւն կը յայտնեն, իրենց օժանդակութեան բաժինը բերել, մեր հանգստեան տուները ընդունուելու կոչուած ծեր թեկնածուներու պաշտօնական գործողութեանց վերաբերեալ աշխատանքներուն։

Արդ, Փարիզի Ազգատախնամի վարչութիւնը սիրով ընդառաջ երթալով վերոյիշեալ մարմիններուն խնդրանքին, կը ծանուցանէ ներկայովս, Մարսէյլի եւ շրջանի բոլոր այն ծերերուն, որոնք պիտի փափաքէին Սէն Ռաֆայէլի, Մոնմօրանսիի եւ Անթիբի հանգստեան տուները մտնել, փութան իրենց դիմումը կատարել Մարսէյլի Ազգատախնամին կամ Հարաւային Ֆրանսայի Հայոց Առաջնորդարանը, որոնք հարկ եղած պաշտօնական թուղթերու գործողութիւնները կատարելով, ամէն դիւրութիւն պիտի ընծայեն։

Հասցէ՝ Ազգատախնամի՝

339, Avenue du Prado, Marseille

Հայոց Առաջնորդարան՝

26, Rue des Convalescents, Marseille

ՓԱՐԻԶԻ ԱԶԳ.Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 – 1962 տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են ։ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է փութան այժմէն իսկ դիմում ընել հաստատութեան տնօրէնութեան ։

Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ ։ Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ ․

Ա) Ֆրանսականը, որ տասացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պըըվէի եւ պագալորէայի ։

Բ) Հայկականը, որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ ։

Աշակերտուհիներ կ'ընդունի 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան ․—

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)

Հեռաձայն 927 – 01,72





ՊԱՏԱՐԱԳ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնը կը փութայ ծանուցանել Տէսինահայ յարգոյ հայ հասարակութեան թէ, այս կիրակի առաւօտ ժամը 8,30ին պատարագ պիտի մատուցուի տեղւոյն Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ։ Կը պատարագէ Տէր Վարդ քհնյ. Աւագեան։

Նաեւ հոգեհանգստեան պաշտօն կը խնդրեն (Փիւժէ-սիւր-Արժանսէն) այրի Տիկին Վարդանուշ Կակոյեան եւ (Վիէննէն) Տէր եւ Տիկին Տիգրան Մուրատեան իրեն ամուսնոյն եւ կնքահօր Մարտիրոսի մահուան տարելիցին առթիւ։ Նաեւ Կակոյեան, Մուրատեան եւ Մարգարեան գերդաստանի համայն ննջեցելոց։









Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս կիրակի ժամնաւոր հանդիսաւոր Հոգեհանգիստ կը կատարուի Թուրքիոյ Հայոց Պատրիարք Նորոյ վախճանեալ:*
Ամեն. Տ. Գարեգին Արք. Խաչատուրեանի *մահուան քառասունքին առիթով:*

*Մեծահամբաւ տիպար եկեղեցականին եւ վաստակաւոր մատենագիրին յիշատակը յարգելու կը հրաւիրուին Կրօն. Ընկերակցութեան անդամները եւ հայ հասարակութիւնը:*

*× Եկեղեցին Պ. Արամ Սամսոնեանէ փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է 10 Ն.Ֆ., ողբացեալ Ստեփան Աճէմեանի յուղարկաւորութեան առիթով:*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

### ԱԼՖՈՐՎԻԼԻ ՆՈՒԻՐԱՏՈՒՆԵՐՈՒ ՑԱՆԿԸ

*Զաւէն Միլեան, Տէր եւ Տիկ. Աղբաբեան, Յար. Մուսիկեան, Խաչիկ Տիւզեան, Տիկ. Արաքսի Յովնանեան, Կար. Յակոբեան, Տիկ. Սիրվարդ Տէր-Գէորգեան, Կարօ Յովհաննէսեան, Օննիկ Եանըքեան, Վահրամ Մանկասարեան, Աբրահամ Տէրճեան, Հեղինէ Շահինեան, Դաւիթ Փաչայեան, Յար. Էտինեան, Գրիգոր Գայլիկեան, Կատարինէ Սալաղեան, Վաղինակ Ալթունեան, Սիրանուշ Խաչիկեան, Թորոս Գետիկեան, Սարգիս Նիկողոսեան, Կարապետ Փափազեան, Լեւոն Աւետիսեան, Փիլիպպոս Անդրանիկեան, Տիկին Անմահեան, Մովսէս Մովսէսեան, Գրիգոր Գասպարեան, Յովսէփ Ասլանեան, Մանուկ Մանուկեան, Շաքէ Սանդուրեան, Հաճի Կար. Պետրոսեան, Սարգիս Մութաֆեան, Պերճ Փափազեան, Յակոբ Գույումճեան, Տիկ. Աննիկ Աբրահամեան, Մարկոս Մարկոսեան, Նշան Սէյրանեան, Խաչիկ Աղբաբեան, Կար. Փէհլիվանեան, Հայկանուշ Շահինեան, Հաճի, Յովհ. Ալեքսանեան, Յակոբ Ոսկանեան, Մարգարիտ Գարակէօզեան, Մկրտիչ Առաքելեան, Պետրոս Նորատլեան, Տաճատ Յակոբեան, Ժիւլիէն Մանուկեան, Մանուկ Փաչայեան, Ժիրայր Քէլէշեան, Յար. Թովմասեան, Պերճար Վեցիկեան, Հայկուհի Տէր-Յակոբեան, Արտաշէս Գումրուեան, Աննա Ղազարոսեան, Մովսէս Կարապետեան, Ս. Մալճեան, Պետրոս Շահպազեան, Ժան Փափազեան, Յար. Թաշըրեան, Սերոբէ Գզիրեան, Վեցիկեան, Յովսէփ Տէրտէրեան, Գալուստ Ասլանեան, Անտրէ Նըտուրկուտեան, Գրիգոր Եազուպեան, Զաքար Տէր-Արէլեան, Արթին Սերաճեան, Թորոս Ստեփանեան, Նուպար Գօճապաշեան, Գրիգոր Ալթունեան, Գրիգոր Զերչեան, Անտրէ Քէչէրիկեան, Ռոպէր Գինոսեան, Լեւոն Մարգարեան, Մարի Մանուկեան, Նուպար Պասմաճեան 5ական Ն. Ֆրանք: Տիկ. Մարիամ Անանեան, Գրիգոր Տէր-Ղազարեան 4ական Ն. Ֆրանք: Սարգիս Նահապետեան, Տիրան Գարկաչեան, Կարպիս Վարդանեան, Գզիրեան, Վահան Խաչատուրեան 3ական Ն. Ֆր.: Լեւոն Ասլանեան, Տիգրան Մխիթարեան, Յովհ. Խանչերեան, Սիրանուշ Յակոբոսեան, Յար. Ուփէլէկեան, Համբարձումեան, Խաթուն 2ական Ն. Ֆր.: Սեֆէրեան 1,50 Ն. Ֆ.: Արմենուհի Մուրատեան 1 Ն. Ֆրանք:*

*Ընդհ. գումար* 4408 Ն.Ֆ.

(Վերջ Ալֆօրվիլի ցանկին)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*ՎԻԷՆ.— Ֆրանսահայ Կապ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է, Պ. Մուշեղ եւ ընկերուհի Քնարիկ Մուրատեանի զաւկին՝ Պ. Վազգէնի ամուսնութեան առթիւ կնքահայր՝ Տէր եւ Տիկին Սերոբ Բարսեղեանէն (Լիոն) 50 Ն. Ֆ.: Պ. Արմենակ Դաւիթեանէ (Փիւժէ) 20 Ն. Ֆ.: Տէր եւ Տիկին Մուրատեանէ 10 Ն. Ֆ.: Տէր եւ Տիկ. Հ. Մուրատեանէն (Տէսին) 10 Ն. Ֆ.: Նոր նըշանուած՝ Պ. Գավավեան (Լիոն) եւ Օր. Արմենուհի Մուրատեանէ 10 Ն. Ֆ.: Տէր եւ Տիկ. Յովհաննէսեանէ (Փոն տը Շերի) 5 Ն. Ֆրանք:*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկին Աղնիւ Բ. Տամլամեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Տամլամեան, Տէր եւ Տիկին Բիւզանդ Խոտիկեան, Տէր եւ Տիկին Վահէ Տամլամեան, Եղուարդ եւ Արիս Տամլամեան, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով եւ փոխան ծաղկեպսակի նուիրատուութեամբ ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, մեծ-հօր եւ ազգականին*

*ԲԱՐՍԵՂ ՏԱՄԼԱՄԵԱՆԻ*

*մահուան առթիւ:*

### ՆՈՒԷՐՆԵՐ ԿԱՊ. ԽԱՉԻ ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆԻՆ

*Տէր եւ Տիկ. Հապէշեան (Փարիզ) 3 քիլօ կարկանդակ եւ 2 քիլօ պոնպոն: Կապոյտ Խաչի Վալանսի մասնաճիւղ 25 քիլօ ձաւար: Տիկին Գասպարեան (Մարսէյլ) 20 Ն.Ֆ.: Տիկին Թիւթէլեան (Մարսէյլ) 10 Ն.Ֆ.: Տէր եւ Տիկ. Թովմասեան (Ալֆորվիլ) 10 քիլօ շաքար: Տէր եւ Տիկին Շարլ Խաչատուրեան (Լիոն) 85 հատ փենիսէլին, եւ 20 Նոր Ֆրանք: Օրիորդ Միսքճեան (Նիս) 2 ծրար դեղօրայք: Պ. Լ. Մոմճեան (Փարիզ) 30 տուփ դեղ եւ 100 տետրակ: Տիկ. Արփինէ Միքայէլեան (Լիոն) 4 մեթր կարասիի կերպաս: Տէր եւ Տիկին Ճէլալեան (Փարիզ) կարկանդակ եւ շաքար: Տէր եւ Տիկ. Շահինեան (Փարիզ) շոքոլա: Տէր եւ Տիկ. Մաճալեան (Փարիզ) մէկ քիլօ պոնպոն:*





### ՊԱՏԱՐԱԳ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնը կը փութայ ծանուցանել Տէսինահայ յարգոյ հայ հասարակութեան թէ, այս կիրակի առաւօտ ժամը 8,30ին պատարագ պիտի մատուցուի տեղւոյն Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ: Կը պատարագէ Տէր Վարագ քհնյ. Աւագեան:*

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

*Այս կիրակի՝ ութերորդ օր Վերափոխման:*

*Ժամը 10,30ին ձայնաւոր պատարագ պիտի մատուցանէ*

ԳԵՐՊ. ԿԻՒՐԵՂ ԶՕՀՐԱՊԵԱՆ
*Յունաստանի եւ Ճէզիրէի հայ կաթողիկէներու նախկին առաջնորդը:*

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան:





## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Պ. Արիս Բարայեան 20 Ն.Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան, փոխան ծաղկեպսակի, Բարսեղ Տամլամեանի մահուան առթիւ։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Այրի Տիկին Հռիփսիմէ Խաչատուրեան (Սուք Արաս) Ալժերիա, կը նուիրէ 50 Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Ցեսանվիլլէի օդափոխութեան կայանին, իր ողբացեալ ամուսնոյն՝ Ցարութիւն Խաչատուրեանի մահուան քառասունքին առթիւ։

Գեւոնեան – Սուրեան ընտանիքը կը նուիրէ 20 Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Ցեսանվիլլէի օդափոխութեան կայանին, իրենց այցելութեան առթիւ։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս կիրակի մասնաւոր հանդիսաւոր Հոգեհանգիստ կը կատարուի Թուրքիոյ Հայոց Պատրիարք Նորոգ վախճանեալ

Ամեն. Տ. Գարեգին Արք. Խաչատուրեանի մահուան քառասունքին առիթով։

Մեծահամբաւ տիպար եկեղեցականին եւ վաստակաւոր մատենագրին յիշատակը յարգելու կը հրաւիրուին Կրօն. Ընկերակցութեան անդամները եւ հայ հասարակութիւնը։

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 – 1962 տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են ։ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է փութան այժմէն իսկ դիմում ընել հաստատութեան տնօրէնութեան ։

Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ ։ Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ ․

Ա) Ֆրանսականը, որ տասացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պրըվէի եւ պագալորէայի ։

Բ) Հայկականը, որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ ։

Աշակերտուհիներ կ'ընդունի 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան —

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)
Հեռաձայն 927 – 01,72

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Երեւանէն Տիկին Մելիքա Յովհաննէսեան կը փնտռէ իր հօրեղբայրը Պ. Միսաք Գրիգոր Համբարձեան, որ պատերազմին գերի է ինկած եւ ըստ իր ստացած տեղեկութիւններուն, այժմ կը գտնուի Մարսէյլ։ Ծնած 1923ին Ալիճի շրջանի Խարկով գիւղը, հօր անունը Գրիգոր, մայրը Հայկանուշ. ունի չորս եղբայրներ Սեդրակ, Նորայրին, Գեղամ, Արտաշ եւ երեք քոյրեր Արուսեակ, Մարմար եւ Աղունիկ։

×

Հայաստանէն Տէր եւ Տիկ. Արամայիս եւ Հռիփսիկ Արրահամեան կը փնտռեն իրենց զաւակները Գուրգէն՝ ծնած 1923ին եւ Լիպարիտ՝ ծնած 1924ին, Արթիկ, որոնք պատերազմին կորսուած են։

×

Հայաստանէն կը փնտռեն իրենց մօրաքոյրը Տիկին Եղիսաբէթ Ստեփանեան. ամուսնին անունը Կարապետ, իսկ տղուն Արտաւազդ, որոնք Կարսեցի են եւ առաջին պատերազմին բաժնուած իրենց սիրելիներէն։

Վերոյիշեալ անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ Դիւանը՝ 15 Ռիւ Ժան Կուժոն, Փարիզ 8րդ։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)





## ԵՐԵՒԱՆ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԻ ԺԱՄԵՐ

Եւրոպայի երկիրները ազգով Հայերուն համար Երեւանի ձայնասփիւռի նոր ալիքները.— Ամէն Չորեքշաբթի եւ Կիրակի առաւօտները ժամը 9ին՝ (13 – 19 եւ 25 մեթր կարճ ալիքներով)։

## ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Լիոնի եւ Շրջ. Ազգային Միութեան Կեդր. Վարչութիւնը կը յայտարարէ թէ գիտութիւն Լիոնահայ Ժողովուրդին թէ 1961 Յունիս 4ին Գաղութահայ առաջին ընդհ. ժողովի որոշումով, երկրորդ Գաղութահայ ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ յառաջիկայ Սեպտ. 24ի կիրակին, կէսօրէ վերջ ժամը 3ին, Ազգային Տան մեծ սրահին մէջ ինչ որ այժմէն կը յանձնենք Լիոնահայ Ժողովուրդին ուշադրութեան։

Ի դիմաց Լիոնի և Շրջ. Ազգ. Միութեան
Ատենապետ Հ. ՔԻԹԱՊՃԵԱՆ
Ատենադպիր Յ. ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ

ՕՐ. ՎԱՐԴՈՒՀԻ ՔԷՇԱՊԵԱՆ
եւ
ԸՆԿ. ՄԱՐՏԻՐՈՍ ՕՀԱՆԵԱՆ
Նշանուած
23 Յուլիս 1961
Շաւիլ . . . ՍԷՆ–Շամոն

×

*Այս ուրախ առթիւ Տէր եւ Տիկ. Կղեմէս Օհանեան, Կապ. Խաչի Շաւիլի մասնաճիւղին կը նուիրեն 20 Ն. Ֆ.:*

## ՆՈՒԷՐ

*ՏԻԿԻՆ ՄԱՁԼԸՄԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ*

*Տէր եւ Տիկին Մելքոն Գեւորգեան 50 Ն. Ֆ. կը նուիրեն Որբերու Օգն. Մարմնին ՏԻԿԻՆ ԱՏԼԻՆ ՄԱՁԼԸՄԵԱՆԻ մահուան հինգերորդ տարեդարձին առթիւ:*
*(Ստանալ «Յառաջ»էն):*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Կապ. Խաչի Շաւիլի մասնաճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Գ. Միսաք Սարգիսեանէ 20 Ն. Ֆ. իր կնոջ, ընկերուհի Լիւսիի մահուան երրորդ տարելիցին առթիւ:*

*ՃՇԴՈՒՄ.— Գալաքեան Սրբազանի շիրիմին նուիրատուներու ցանկին մէջ (Օգոստոս 5) Գ. Լորէնեանի անունին քով գրուած էր Գրազիլիա: Պէտք ըլլայ* Տրակինեան:

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Երկու կիներ կրթական հաստատութեան մը մէջ ծառայելու համար (հանդերձատուն եւ խոհանոցի աշխատանքներ):*
*Դիմել անձամբ Յառաջի վարչութեան:*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

*Երեւանէն Տիկին Մելսիդա Յովհաննէսեան կը փնտռէ իր հօրեղբայրը Գ. Միսաք Գրիգոր Համբարձեան, որ պատերազմին գերի է ինկած եւ ըստ իր ստացած տեղեկութիւններուն, այժմ կը գտնուի Մարսէյլ: Ծնած 1923ին Ալինի շրջանի Խարկով գիւղը, հօր անունը Գրիգոր, մայրը Հայկանուշ. ունի չորս եղբայրներ Սեդրակ, Նորայրին, Գեղամ, Արտաշ եւ երեք քոյրեր Արուսեակ, Մարմար եւ Աղունիկ:*

×

*Հայաստանէն Տէր եւ Տիկ. Արամայիս եւ Հռիփսիկ Աբրահամեան կը փնտռեն իրենց զաւակները Գուրգէն՝ ծնած 1923ին եւ Լիպարիտ՝ ծնած 1924ին, Արթիկ, որոնք պատերազմին կորսուած են:*

×

*Հայաստանէն կը փնտռեն իրենց մօրաքոյրը Տիկին Եղիսաբէթ Ստեփանեան. ամուսնին անունը Կարապետ, իսկ տղուն Արտաւազդ, որոնք Կարսեցի են եւ առաջին պատերազմին բաժնուած իրենց սիրելիներէն:*

*Վերոյիշեալ անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեալ պահել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ Դիւանը՝* 15 Ռիւ Ժան Կուժոն, Փարիզ 8րդ:

## Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼ.— Բացառիկ ընկերական ընդհ. ժողով:

*Հ. Յ. Դաշնակցութեան Մարսէյլի Շրջ. Կոմիտէն բացառիկ ընկերական ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Մարսէյլի շրջանի բոլոր ընկեր – ընկերուհիները այս Շաբաթ երեկոյեան ժամը ճիշդ 20.30ին (ժամը 8,30ին), «Ահարոնեան» սրահը՝* 26, Ռիւ Քոնվալէսան, Մարսէյլ:

*Շատ կարեւոր օրակար: Բոլոր ընկեր – ընկերուհիներէն կը խնդրուի ներկայանալ անգամատոմսով:*

×

*Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ Ավինեոնի «Մուրատ» խումբը այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներէն կը խնդրուի անպատճառ ներկայ գտնուիլ:*



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԿՈՉ

ՃԻՊԷՅԼԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՈՐԲԱՆՈՑԻ(ՆԵՐ)
ՆԱԽԿԻՆ ՍԱՆԵՐՈՒՆ

1920–1926 ՏԱՐԵՇՐՋԱՆ

*Ճիպէյլի Որբանոցի նախկին սաները գեղեցիկ յղացումը ունեցան գրուած տեսնելու ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆ մը, որ բովանդակէ 1920–1926 տարեշրջանին Ճիպէյլի Ամերիկեան Որբանոցին մէջ ապրող սաներու կեանքը:*

*Ճիպէյլի Ամերիկեան Որբանոցին ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆը գրուած տեսնելու գաղափարը հինէն կուգայ. այն օրերէն երբ որբանոցը կը փակուէր եւ անոր սերունդը կեանքի ասպարէզ կը նետուէր, ցրուած քիչ մը ամէն երկրի մէջ: Տարագաները եթէ թոյլատու չեղան անցեալին, սակայն այսօր իրականութիւն դարձնելու աշխատանքին լծուած են Լիբանանի, Սուրիոյ, Միաց. Նահանգներու, Ֆրանսայի եւ այլ երկիրներու մէջ գտնուող նախկին սաները, նպատակ ունենալով հրատարակել պատմութիւնը իրենց նախկին Որբանոցին եւ անոր խնամքին տակ հասակ նետած սերունդին:*

*Կազմուած են արդէն ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆի հրատարակութեան Կեդրոնական Մարմին մը Պէյրութի եւ Շրջանային Յանձնախումբեր Միացեալ Նահանգներու, Ֆրանսայի եւ Սուրիոյ մէջ:*

*Կեդրոնական Մարմինս նախապատրաստական աշխատանքները արդէն աւարտած ըլլալով, ներկայ կոչով հրաւէր կ'ուղղէ Ճիպէյլի Ամերիկեան Որբանոցի նախկին սաներուն, ուսուցիչներուն եւ պաշտօնեաներուն անխտիր՝ բերելու իրենց տրամադրութեան տակ գտնուող միջոցներով, իրենց աջակցութիւնն ու աշխատակցութիւնը հրատարակուելիք ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆին:*

*Ծրագրուած է, ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆին մէջ տալ վաւերական պատմութիւնը Առաջին Աշխարհամարտի արհաւիրքներէն ճողոպրած սերունդին, սկսած՝ Փոքր Ասիոյ խորերէն մինչեւ Սուրիական անապատները, մինչեւ այդ սերունդին համախմբումը Մերձաւոր Արեւելքի Նպաստամատոյց Մարմնի կողմէ բացուած Որբանոցներուն մէջ եւ մանաւանդ* պատմութիւնը ամբողջական, արժանավայել՝ այդ սերունդի այն հատուածին, որուն վիճակուեցաւ ապրի՛լ, հասակ նետել, ուսում եւ դաստիարակութիւն ստանալ *Ճիպէյլի Ամերիկեան Որբանոցին մէջ:*

*Մեծ է ծրագրուած աշխատանքը եւ կը կարօտի շատերու աշխատակցութեան: Հրատարակուելիք ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆին համար անհրաժեշտ են նախկին սաներու որբանոցային կեանքի յուշերը, պատումները, նկարներ, թերթեր, փաստաթուղթեր, անհրաժեշտ են՝ իւրաքանչիւր սանի ո՛ր գաւառանի աշակերտ, որ տարին, քանի՛ տարի մնացած որբանոցը ... ղած են իր ուսուցիչները, աշակերտութեան թիւը. այլեւ նախկին սաներուն ներկայ վիճակը, ընտանեկան եւ ընկերական կացութիւնը, զբաղումը եւ հարցէն պատկերացնող մանրամասնութիւնները:*

*Ձեռնարկին մեծածախս հանգամանքը նկատի ունենալով, կոչ կ'ընենք, որ իւրաքանչիւր նախկին սան լայնօրէն բերէ իր բարոյական աջակցութեան հետ նաեւ նիւթական աջակցութիւնը՝ նուիրատուութեամբ:*

*Սիրելի նախկին սաներ, բախտակից եղբայրներ, ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆը, որուն պատրաստութեան ձեռնարկուած է, պիտի բովանդակէ ձեր կեանքը, պիտի տայ պատմութիւնը 'այն Որբանոցին, որուն յարկին տակ ձեւ առաւ ամէն մէկ սանի դիմագծութիւնը. հայօրէն զգալու եւ մտածելու, հայօրէն ապրելու եւ գործելու պայծառ գիտակցութիւնը:*

*Պատմութիւնը նաեւ այն սերունդին, որ հազիւ Որբանոցէն դուրս ելած՝ պիտի համախմբուէր հայ կեանքին՝ իր պատուաւոր բաժինը բերելու հայ հանրային-հասարակական շարժումներուն մէջ:*

*Ներկայ կոչը հրաւէր մըն է բոլորին, անխտիր, ուր ալ գտնուին, անմիջապէս հաղորդակցութեան մտնելու Շրջանային Յանձնախումբերու կամ ուղղակի Կեդրոնական Մարմնիս հետ եւ ձեր կարելի միջոցներով աջակցելու ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆի պատրաստութեան եւ հրատարակութեան կենսական գործին:*

*Ամէն կարգի նամակ եւ գրութիւն կը խնդրուի ուղարկել Կեդր. Մարմնի նախագահ՝ Յովհաննէս Շահինեանի, եւ դրամական առաքումները՝ գանձապահ՝ Գէորգ Խաչերեսեանի անունին, ստորեւ նշանակուած հասցէներով:*

**H. Chahinian**
Pharmacie de la Santé
Rue Foch, Beyrouth — Liban

**K. Katcheressian**
Galery Allenby
Rue Allenby, Beyrouth — Liban.

Ճիպէյլի Ամերիկեան Որբանոցի
Յուշամատեանի Հրատարակութեան
ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՄԱՐՄԻՆ

*Յուշագրութիւնները հասած պէտք է ըլլան ամէնէն ուշը մինչեւ 1961, Դեկտեմբեր 31:*

### ՔԼԱՄԱՐԻ ԱՂԷՏԵԱԼՆԵՐՈՒՆ

Ֆրանսահայ Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղը 200 Ն. Ֆ. նուիրած է Քլամարի աղէտեալներու ֆոնտին, Շրջ. Վարչութեան միջոցաւ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Շաւէն եւ Ցասմիկ Ինճէեան կը նուիրեն 300 մանուկի բաժակ եւ փունջ մը մանուկի պատրաստութեան, Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլլէի օգափոխութեան կայանին, իրենց մայրերուն, Արուսեակ Ինճէեանի եւ Քենովարէ Սարեանի մահուան 5րդ եւ 4րդ տարեդարձին առթիւ։

Գ. Պօղոս Գույումճեան (Ժանթիյի) մանուկի բաժակներուն եւ փունջին փոխարէնը Քոլոմպէն Ֆէսանվիլլէ կատարած է ձրի, միեւնոյն ժամանակ նուիրելով 15 քիլօ թարմ ձուկ։

×

Տէր եւ Տիկին Քէօշկէրեան կը նուիրեն 20 Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլլէի օգափոխութեան կայանին՝ իրենց այցելութեան առթիւ։

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Երկու կիներ կրթական հաստատութեան մը մէջ ծառայելու համար (հանդերձատուն եւ խոհանոցի աշխատանքներ)։

Դիմել անձամբ Յառաջի վարչութեան։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Ֆրանսայէն 1947ին Հայաստան ներգաղթած Տիկին Էֆրոնիա Մանուկեան կը փնտռէ իր եղբայրը, արհեստով դերձակ Գ. Աստուր Սանփան Հայտոոեանը որ երկար ժամանակէ ի վեր Փարիզ կը բնակի եւ ամուսնացած է Ֆրանսուհիի մը հետ։

×

Թիֆլիսէն Կազարեան ընտանիքը կը փնտռէ իրենց ամուսինը եւ հայրը, Գ. Սենիկ Կազարեանը, այլ անունով Էլամիրեան, հօր անունը Արշակ որ երկրորդ մեծ պատերազմին կորսուած է։

Վերոյիշեալ անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեակ պահել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ Դիւանը՝ 15 Ռիւ Ժան Կուժոն, Փարիզ 8րդ։

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ
### ԶԱՐԵՀ ԳԱՍԵԱՆԻ

Սալերու Ա. շարքը, հետեւեալ 4 երգերով.— Իմ Երգը, Նազեր, Իղձ (Գ. Մ. Ալէմշահ) եւ Ծիրանի ծառ (Կոմիտաս)։

Դիմել հետեւեալ հասցէներուն.—

ՄԱՐՍԷՅԼ.— Խայիկեան
75, La Canebière
եւ Ալֆազ
23, Rue Ste-Barbe

ՎԱԼԱՆՍ.— Գասեան
6, Rue Bouffier

եւ ամէն շրջանի մէջ հայերէն սալեր ապառողներուն մօտ։

### Communiqué

Pour vos travaux de PEINTURE n'hésitez pas à consulter.

LES PEINTURES TIL'LAC, sont de première qualité et à des prix imbattables.

Spécialement le VINYTIL, peinture plastique moderne d'utilisation universelle, ainsi que le TIL'EMAIL glycérophtalique au brillant incomparable.

**S. A. PEINTURES TIL'LAC**
*Société d'Arméniens*
25,Rue de Trévise — PARIS (9e)
PRO 44-39

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր ու Ժամեր

### ԿՈՉ՝ ՄԱՐՍԷՅԼԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ ՏԱՐԲԵՐ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

—o—

Փարիզի Ազգատախնամի վարչութիւնը, Մարսէյլի Ազգատախնամէն, ինչպէս նաեւ Հարաւային Ֆրանսայի Հայոց Առաջնորդարանէն, ստացած է առանձին նամակներ, որոնցմով տրամադրութիւն կը յայտնեն, իրենց օժանդակութեան բաժինը բերել, մեր հանգստեան տուները ընդունուելու կոչուած ծեր թեկնածուներու պաշտօնական գործողութեանց վերաբերեալ աշխատանքներուն ։

Արդ, Փարիզի Ազգատախնամի վարչութիւնը սիրով ընդառաջ երթալով վերոյիշեալ մարմիններուն խնդրանքին, կը ծանուցանէ ներկայիս, Մարսէյլի եւ շրջանի բոլոր այն ծերերուն, որոնք պիտի փափաքէին Սէն Ռաֆայէլի, Մոնմորանսիի եւ Անտիյիի հանգստեան տուները մտնել, փութան իրենց դիմումը կատարել Մարսէյլի Ազգատախնամին կամ Հարաւային Ֆրանսայի Հայոց Առաջնորդարանը, որոնք հարկ եղած պաշտօնական թուղթերու գործողութիւնները կատարելով, ամէն դիւրութիւն պիտի ընծայեն։

Հասցէ՝ Ազգատախնամի՝
339, Avenue du Prado, Marseille
Հայոց Առաջնորդարան՝
26, Rue des Convalescents, Marseille

ՓԱՐԻԶԻ ԱԶԳ.Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ
### Նահանջը Առանց Երգի

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋին

### ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ
ԴԷՊԻ
### ԵՐԵՒԱՆ

Երեք շաբաթը անգամ մը

ՆԱՒՈՎ

ՄԱՐՍԷՅԼԷՆ ուղղակի դէպի ԵՐԵՒԱՆ

Երթուդարձի գիներն են, վերակոչով լերադարձին կարելի է Վենետիկ իջնել

13 ՕՐ ԵՐԵՒԱՆ

Պանդոկի մէջ բնակութեամբ եւ սնունդով

Բ. կարգ 3046 Ն. Ֆ.
Գ. կարգ 2506 Ն. Ֆ.

ԶԵՂՉ խմբովին ճամբորդողներուն։

ՈՒՂԵԳՈՅՑՔԻ իրաւունք, անձ գլուխ, 150 քիլօ՝ Բ. կարգի եւ 100 քիլօ՝ Գ. կարգի ճամբորդներուն։

Նոյն ճամբորդութիւնը օդանաւով կամ երկաթուղիով։

Մեր գրասենեակը կը գրաղի նաեւ դէպի Ամերիկա, Սուրիա եւ այլ ճամբորդութիւններով։

ԴԻՄԵԼ՝

ԺԱՆ-ԵՂԻՇԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼ
48, Rue de la République
Tél.: 20.47.22
MARSEILLE

ՓԱՐԻԶ
Մասնաճիւղ
7, Rue Auber, 7
Tél : RIC. 63-69
PARIS (9e)

### Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼ.— Բացառիկ ընկերական ընդհ. ժողով։

Հ. Յ. Դաշնակցութեան Մարսէյլի Շրջ. Կոմիտէն բացառիկ ընկերական ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Մարսէյլի շրջանի բոլոր ընկեր – ընկերուհիները այս Շաբաթ երեկոյեան ժամը ճիշդ 20.30ին (ժամը 8,30ին), «Ահարոնեան» սրահը՝ 26, Ռիւ Քոնվալէսան, Մարսէյլ։

Շատ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկեր-ընկերուհիներէն կը խնդրուի ներկայանալ անդամատետրով։

×

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ Ավինեոնի «Մուրատ» խումբը այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներէն կը խնդրուի անպատճառ ներկայ գտնուիլ։

### ՑԱՐՍԱԼԷՋՆԵՐՈՒ ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Ա. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԳԻՆ 7 Ն. Ֆ.

Դիմել՝ ՅԱՌԱՋին

### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են ։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է ։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան ։



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Տէր եւ Տիկին Աւետիս Եագուպեան 50 Ն. Ֆ. կը նուիրեն՝ Օր. Ալիս Սամուէլեանի ընդ Պ. Էմիլ Ասլանեան ամուսնութեան առթիւ ։

×

• ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ
(Ալֆորվիլի ցանկ)

Ուստիլլեան Փ.2000 Հ. Ֆ.։ Նախորդ գումար 440.800 Հ. Ֆ., ընդհ. գումար՝ 442.800 Հ. Ֆ.։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Վիէնի «Անի» կոմիտէն շնորհակալու-թեամբ ստացած է ընկ. Յ. Գալայճեանի մահուան 20 ամեակին առթիւ իր թոռնիկներէն Պէթի, Յովհաննէս եւ Էլիզապէթ 10ական Ն. Ֆ.։

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ — Հ. Յ. Դ. «Անտոք» ենթակոմիտէն իր ամբողջ կազմով ցաւակցութիւն կը յայտնէ այրի Տիկ. Թամելայեին, Տէր եւ Տիկ. Գօզոսին եւ Ակնունիին, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն, իրենց ողբացեալ ամուսնոյն, հօր եւ ազգական

Ընկ. Արշակ Պօղիկեանի

ցառնաղէտ մահուան առթիւ։

## Կ՚ՈՒԶՈՒԻՆ

Երկու կիներ կրթական հաստատութեան մը մէջ ծառայելու համար (հանդերձատուն եւ խոհանոցի աշխատանքներ)։

Դիմել անձամբ Յառաջի վարչութեան։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Ֆրանսայէն 1947ին Հայաստան ներգաղթած Տիկին Էֆրոնիա Մանուկեան կը փնտռէ իր եղբայրը, արհեստով դերձակ Պ. Աստուր Ստեփան Հայրապետեանը որ երկար ժամանակէ ի վեր Փարիզ կը բնակի եւ ամուսնացած է Ֆրանսուհիի մը հետ։

×

Թիֆլիսէն Կազարեան ընտանիքը կը փնտռէ իրենց ամուսինը եւ հայրը, Պ. Սենիկ Կազարեանը, այլ անունով Էլամիրեան, հօր անունը Արշակ որ երկրորդ մեծ պատերազմին կորսուած է։

Վերոյիշեալ անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեակ պահել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ Դիւանը՝ 15 Ռիւ Ժան Կուժոն, Փարիզ 8րդ։



## ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Լիոնի եւ Շրջ. Ազգային Միութեան Կեդր. Վարչութիւնը կը յայտարարէ ի գիտութիւն Լիոնահայ ժողովուրդին թէ 1961 Յունիս 4ին Գաղութահայ առաջին ընդհ. ժողովի որոշումով, երկրորդ Գաղութահայ ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ յառաջիկայ Սեպտ. 24ի կիրակին, կէսօրէ վերջ ժամը 3ին, Ազգային Տան մեծ սրահին մէջ ինչ որ այժմէն կը յանձնենք Լիոնահայ ժողովուրդին ուշադրութեան։

Ի դիմաց Լիոնի և Շրջ. Ազգ. Միութեան
Ատենապետ Հ. ՔԻԹԱՊՃԵԱՆ
Ատենադպիր Յ. ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

—o—

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 – 1962 տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են ։ Ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է փութան այժմէն իսկ դիմում ընել հաստատութեան տնօրէնութեան ։

Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ ։ Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ ․

Ա) Ֆրանսականը, որ տասացի կերպով կը հետեւի պետական լիսէններու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պըրվէի եւ պագալօրէայի ։

Բ) Հայկականը, որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ ։

Աշակերտուհիներ կ'ընդունի 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան .—

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)

Հեռաձայն 927 – 01,72



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)



## Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼ.— Բացառիկ ընկերական ընդհ. ժողով։

Հ. Յ. Դաշնակցութեան Մարսէյլի Շրջ. Կոմիտէն բացառիկ ընկերական ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Մարսէյլի Շրջանի բոլոր ընկեր – ընկերուհիները այս Շաբաթ երեկոյեան ժամը ճիշդ 20,30ին (ժամը 8,30ին), «Ահարոնեան» ակումբ՝ 26, Ռիւ Քօնվալէսան, Մարսէյլ։

Շատ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկեր – ընկերուհիներէն կը խնդրուի ներկայանալ անդամատետրով։

×

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ Ավինեոնի «Մուրատ» խումբը այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներէն կը խնդրուի անպատճառ ներկայ գտնուիլ։



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են ։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է ։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան ։

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Երկու երիտասարդ օրիորդներ 18էն 30 տարեկան իբրեւ վանտէօզ։*

Դիմել

CHEMAVONIAN ET Cie
69, Rue de Cléry, PARIS (2e)

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Ձեռնարկուներ հիւսուածեղէնի համար, լաւ կտրող մը եւ* սիւրժըըթէօզ։

*Դիմել՝*

F. T. N.
195, Rue St.-Denis, PARIS

## ԻՏԱԼԻԱՅԷՆ

*ՀԱՍԱԾ ԵՆ*

*ՄԵՂՐԱՀԱՄ*

**ՁՄԵՌՈՒԿՆԵՐ**

*ՄԵԾԱՔԱՆԱԿ ԹԷ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ*

Համով ԱՐՁԱԿՈՒՐԴ՝ ՊԱՀԱՏՈՒՐ – ԵԱՆ համով ընդեղէններով։

Եթէ մեկնելէ առաջ հանդիպելու ժամանակ չունենաք, ձեր գտնուած տեղէն գրաւոր ապսպրեցէք։ Մեծ խնամքով պատրաստուած ծրարով մը, ձեր ուզածը անմիջապէս պիտի ստանաք։

*ՊԱՀԱՏՈՒՐԵԱՆ վաճառատան մէջ պիտի գտնէք Արեւելեան եւ Եւրոպական ամէնէն ընտիր ապրանքները՝ յարմար գիներով։*

**ՊԱՀԱՏՈՒՐԵԱՆ**
**ՎԱՃԱՌԱՏՈՒՆ**
**246, Rue Vendôme, LYON**

ՄԷԿ ԱՆԳԱՄ ԳՆՈՐԴ
ՄՆԱՑՈՒՆ ՅԱՃԱԽՈՐԴ

## Communiqué

Pour vos travaux de PEINTURE n'hésitez pas à consulter.

LES PEINTURES TIL'LAC, sont de première qualité et à des prix imbattables.

Spécialement le VINYTIL, peinture plastique moderne d'utilisation universelle, ainsi que le TIL'EMAIL glycérophtalique au brillant incomparable.

**S. A. PEINTURES TIL'LAC**
*Société d'Arméniens*
25, Rue de Trévise — PARIS (9e)
PRO 44-39

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Շէք – Փոսթալի թիւն է.—*
C. C. P. PARIS 5460-11

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ*

1961–1962 *ուսումնական տարին կը բացուի Երկուշաբթի Սեպտեմբեր 18ին։ Վարժարանի Տնօրէնութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նոյն թուականին անյապաղ վարժարան առաջնորդեն իրենց զաւակները։*

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Երկու կիներ կրթական հաստատութեան մը մէջ ծառայելու համար (հանդերձատան եւ խոհանոցի աշխատանքներ)։*

*Դիմել անձամբ Յառաջի վարչութեան։*

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ
## ԶԱՐԵՀ ԳԱՍԵԱՆԻ

*Սալերու Ա. շարքը, հեռաւեալ 4 երգերով.—* Իմ Երգը, Նազեր, Իղձ (*Գ. Մ. Ալէմշահ*) եւ Ծիրանի ծառ (*Կոմիտաս*)։

*Դիմել հետեւեալ հասցէներուն.—*
ՄԱՐՍԷՅԼ.— Խայիկեան
75, La Canebière
եւ Ալֆազ
23, Rue Ste-Barbe
ՎԱԼԱՆՍ.— Գասեան
6, Rue Bouffier

*եւ ամէն շրջանի մէջ հայերէն սալեր սպառողներուն մօտ։*

Գին՝ 12 Ն. Ֆ.

*«ԿԱՊՈՅՏ ՕԹԵԱԿ»*

*(Բ. տպագրութիւն), Սկովտիոյ մասոնական կազմակերպութեան առաջին, երկրորդ եւ երրորդ աստիճաններուն մանրամասն ծէսերը եւ արարողութիւնները, Հ. Մ. Համբարձումեանի կողմէ, կը ծախուի միայն գրավաճառ Գ. Բալուեանի մօտ,*
43, Rue Richer, Paris (9e), Tél.: PRO.25-46
Գին 3 Ն. Ֆ.։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Նահանջը Առանց Երգի

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋին

## Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼ.— Բացառիկ ընկերական ընդհ. ժողով։

*Հ. Յ. Դաշնակցութեան Մարսէյլի Շրջ. Կոմիտէն բացառիկ ընկերական ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Մարսէյլի Հերջանի բոլոր ընկեր – ընկերուհիները այս Շաբաթ երեկոյեան ժամը ճիշդ 20.30ին (ժամը 8,30ին), «Ահարոնեան» սրահը՝* 26, Ռիւ. Քոնվալէսան, Մարսէյլ։

*Շատ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկեր – ընկերուհիներէն կը խնդրուի ներկայանալ անպայմանօրէն։*

×

*Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ Ավինեոնի «Մուրատ» խումբը այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներէն կը խնդրուի անպայման ներկայ գտնուիլ։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Իտալիայէն Կուեռինօ Սեմփէր կը փնտռէ իր զաւակներուն մայրը որ 10 տարի առաջ մեկնած է տունէն։ Անունը՝ Մարիա Ասատրեան. կը կարծուի թէ Մօղէյի նահանգն է, Մէսի կողմերը։ Կը խնդրուի իրմէ կամ լուր ունեցողներէն, տեղեկացնել իր նախկին ամուսնոյն։*

*ՀԱՍՑԷ.— Փորթիոլօ, Մանթովա (Իտալիա)։*

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## ՁԵՐ ԲՈԼՈՐ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

→ ՄԷԿ ՀԱՍՑԷ ←

# OFFICE INTERNATIONAL DES VOYAGES

**36, Galerie Monpensier, PARIS**
(Jardin du Palais Royal)
**RIC. 54-30 et 72-80**

*Միակ* լիսանս *ունեցող գործակալութիւնը որ հայ տնօրէն մը ունի —*
ՔՐԻՍԹԻԱՆ ՃԵՐՄԱԿԵԱՆ

ՕԴԱՆԱՒ, ԵՐԿԱԹՈՒՂԻ, ՆԱՒ։ ՎԻԶԱ ԵՒ ՏՈՄՍԵՐՈՒ ԲՈԼՈՐ ՁԵՒԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՁՐԻ, ԿԸ ԲԱՒԷ ՀԵՌԱՁԱՅՆԵԼ

Բոլոր տոմսերու գիները պաշտօնական գիներն են, ոչ մէկ յաւելում։

Licence d'Etat agrée par la Direction Générale du Tourisme Français sous le No 438
Agrée IATA - ATAF - Atlantique Nord et Sud - USAV.

ՀԱՅ ՏՆՕՐԷՆՈՒԹԵԱՄԲ ՄԻԱԿ ՃԱՄԲՈՐԴԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՖՐԱՆՍԱՅԻ ՄԷՋ

*Այս տարի կը կազմակերպէ համբորդութիւններ*

**ԴԷՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ**

*Ամէնէն նպաստաւոր եւ հանգստաւէտ պայմաններով համաձայնութեամբ Խորհրդային եւ Ֆրանսական սպասարկութեանց*

16 Սեպտեմբեր եւ 18 Դեկտեմբեր
ՓԱՐԻԶ – ՄՈՍԿՈՒԱ – ԵՐԵՒԱՆ
Օդային գիծով, տեւողութիւն 16 օր
ԳԻՆ՝ 2420 Ն. Ֆ., որուն 242 Ն. Ֆ.ը կանխիկ եւ մնացեալը ամսական։



## ՃԱՇԱՐԱՆ
## ԵԱՐ

ՀԻՄՆԱԴԻՐ ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆ

Եւրոպական, հայկական եւ կովկասեան ընտիր ճաշեր։

*Առաջնակարգ կովկասեան խորոված*ներ, շաշլիք, քարսքի։

ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ

**Bar Américain**

AU CŒUR MÊME DES CHAMPS-ELYSÉES

4, RUE ROBERT-ETIENNE
(Rue Marbeuf) PARIS - 8e
Téléphone : BAL. 31-21
Métro : F. D. Roosevelt

կը շնորհաւորէ գերման վարչապետը իր պաշտօնին համար եւ ժողովուրդին ըրած կոչին, որուն մէջ Ատընաուր հրաւիրած էր Գերմանացիները որ իրենց գլուխը՝ պաղ եւ սիրտը՝ տաք պահեն:

Դաշնակցային Հանրապետութիւնը կարգ մը միջոցներ ձեռք առաւ ցոյց տալու համար թէ առանց հակազդեցութեան պիտի չընդունի խորհրդային որոշում-ները:

Ատընաուր նամակ մը գրկած է ոչ-դաշնակից պետութեանց, որոնք Սեպտեմբեր 1ին Պելկրատ կը հաւաքուին, ուր կը պարզէ Պերլինի հարցը: Կառավարութիւնը որոշած է ընդհատել բոլոր խօսակցութիւնները, Խորհ. Միութեան հետ, Մոսկուա կատարուելիք գերմանական ցուցահանդէսին մասին (1962ին): Վարչապետը եւ իր նախարարները համամիտ են բանակցութեանց պայմանաւ որ սպառնալիքի տակ տեղի չունենան:

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

### ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ

1961-1962 ուսումնական տարին կը բացուի Երկուշաբթի Սեպտեմբեր 18ին: Վարժարանի Տեսչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նոյն թուականին անյապաղ վարժարան առաջնորդեն իրենց զաւակները:

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 – 1962 տարեշրջանի արձանագրութիւնները բաց են. ամէն անոնք որ կը փափաքին գրկել իրենց զաւակները պէտք է դիմեն հաստատութեան տնօրէնութեան:

Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ: Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ.

Ա) Ֆրանսականը, որ տասացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արխիւլեան բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պրըվէի եւ պագալօրէայի:

Բ) Հայկականը, որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ:

Աշակերտուհիներ կ'ընդունին 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան.—

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)

Հեռաձայն 927 – 01,72

## ՑԱՐԱԼԷՋՆԵՐՈՒ ԴԻՒԱՃԱՆՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Ա. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԳԻՆ 7 Ն. Ֆ.

Դիմել՝ ՅԱՌԱՋԻՆ

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Շէք – Փոսթալի թիւն է.—

C. C. P. PARIS 5460-11

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ
## ԶԱՐԵՀ ԳԱՍԵԱՆԻ

Սալբրու Ա. շարքը, հետեւեալ 4 երգերով.— Իմ Երգը, Նազեր, Իղձ (Գ. Մ. Ալէմշահ) եւ Միրանի ծառ (Կոմիտաս):

Դիմել հետեւեալ հասցէներուն.—

ՄԱՐՍԷՅԼ.— Խայիկեան
75, La Canebière
եւ Ալֆազ
23, Rue Ste-Barbe

ՎԱԼԱՆՍ.— Գասեան
6, Rue Bouffier

եւ ամէն շրջանի մէջ հայերէն սալեր սպառողներուն մօտ:

Գին՝ 12 Ն. Ֆ.

## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ
### ԴԷՊԻ
## ԵՐԵՒԱՆ

Երեք շաբաթը անգամ մը

ՆԱՒՈՎ

ՄԱՐՍԷՅԼԷՆ ուղղակի դէպի ԵՐԵՒԱՆ

Երթուդարձի գիներն են, կերակուրով վերադարձին կարելի է Վենետիկ իջնել

13 ՕՐ ԵՐԵՒԱՆ

Պանդոկի մէջ բնակութեամբ եւ սնունդով

| | |
|---|---|
| Բ. կարգ | 3046 Ն. Ֆ. |
| Գ. կարգ | 2506 Ն. Ֆ. |

ԶԵՂՉ խմբովին ճամբորդողներուն:

ՈՒՂԵԳՈՅՑՔԻ իրաւունք, անձ գլուխ, 150 քիլօ՝ Բ. կարգի եւ 100 քիլօ՝ Գ. կարգի ճամբորդներուն:

Նոյն ճամբորդութիւնը օդանաւով կամ երկաթուղիով:

Մեր գրասենեակը կը գրաղի նաեւ դէպի Ամերիկա, Սուրիա եւ այլ ճամբորդութիւններով:

ԴԻՄԵԼ՝

ԺԱՆ-ԵՂԻՇԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼ
48, Rue de la République
Tél.: 20.47.22
MARSEILLE

ՓԱՐԻԶ
Մաանտենիւղ
7, Rue Auber, 7
Tél : RIC. 63-69
PARIS (9e)

## ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ
## Նահանջը Առանց Երգի

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋԻՆ

## Հ. Յ. Դ.

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս շաբաթ երեկոյ ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբի մէջ: Կարեւոր օրակարգ:

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Ձեռնարկուներ հիւսուածեղէնի համար. լաւ կտրող մը եւ սիւրժըլըէօզ:

Դիմել՝

F. T. N.
195, Rue St.-Denis, PARIS

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Երկու երիտասարդ օրիորդներ 18էն 30 տարեկան իբրեւ վանտէօզ:

Դիմել

CHEMAVONIAN ET Cie
69, Rue de Cléry, PARIS (2e)

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Իտալիայէն Կուեռինօ Սեմփէր կը փնտռէ իր զաւակներուն մայրը որ 10 տարի առաջ մեկնած է տունէն: Անունը՝ Մարիա Աստիկեան. կը կարծուի թէ Մօզէլի նահանգն է, Մէսի կողմերը: Կը խնդրուի իրմէ կամ լուր ունեցողներէն, տեղեկացնել իր նախկին ամուսնոյն:

ՀԱՍՑԷ.— Փորթիոլօ, Մանթովա (Իտալիա):

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

ԱՐԵՒԸ քնութեան կուտայ կապոյտ երկինք, կանաչ սար ու ձոր, գոյնզգոյն ծաղիկներ եւ զուարթ լոյս...

ԱՐԵՒԸ կրնայ ձեր տունն ալ ողողել իր զուարթ լոյսով ու գոյներով եթէ ձեր բնակարանը ՎԵՐԱՆՈՐՈԳԷՔ, ԶԱՐԴԱՐԷՔ եւ ՆԵՐԿԷՔ

ԹՈՎՄԱՍԵԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐՈՒ

ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐՈՎ

# PEINTURES THOMLAC

**16 bis, Bd. Sébastopol, Paris 4e**

Tél. ARC 26-61 – Métro : Halles et Chatelet

**136, Rue des Bourguignons, Asnières-Bois Colombes**

Tél. : GRE. 09-47

**11, Bd. de la République, La Garenne**

Tél. : STA. 19-06

ԱՆՄՐՑԵԼԻ ԳԻՆԵՐՈՎ

Մեր սեփական արտադրութիւնը եղող է ամէնէն արդիական ճաշակով հնարուած առաջնակարգ ներկեր, գոյներու մեծ ընտրութիւն սէնթէթիք եւ վինիլիք պատրաստութիւններու: Նորոյթ իւղաներկեր, պատի սիրուն թուղթեր, ամէն տեսակ լինոլէոմ եւ փլասթիք:

Ձեր բնակարաններուն արտաքին եւ ներքին խնամքներուն համար անհրաժեշտ բոլոր նիւթերը:

ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐ

52, RUE CHALON, PARIS 12e
64, BLD. DE BELLEVILLE, PARIS 20e
166, AV. ARISTIDE BRIAND PAVILLON - SOUS - BOIS (SEINE)
4 bis, RUE P. V.-COUTURIER, ARGENTEUIL — S. et O.
24, RUE PAUL VAILLANT-COUTURIER — ALFORTVILLE
48 bis, RUE DALAYRAC — FONTENAY - SOUS - BOIS

## MORY et Cie

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ:

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք: Նաւագնացքով ծախքերով կը ղրկենք Խորհրդ. Միութիւն:

Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար.—

**10, Rue St. Vincent de Paul, Paris 10e**

(PRÈS DE LA GARE DU NORD)

**Téléphone : TRU. 27-70**

### ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Ընկ. Լուսեր Զազմազճեանի եւ Օրիորդ Գոհարիկ Ձերչըսահակեանի ամուսնութիւնը կատարուած է Օգոստ. 19ին, Լոնտոնի Ս. Սարգիս եկեղեցւոյ մէջ։

Այս առթիւ Հայ Մշակոյթի սրահին կը նուիրեն.— Ձերչըսահակեան 1 անգլիական, Գ. Սեպուհ 10 շիլին, Հ. Գէորգեան 10 շիլինկ, (Ստանալ «Յառաջ»էն)։ Այս առթիւ «Յառաջ»ի բարգաւաճման ընկ. Յովհ. Զալըգեան 1 անգլիական, ընկ. Ս. Գրիգորեանի յաջողութեան առթիւ 10 շիլին կը նուիրէ։

### ՆՈՒԷՐՆԵՐ ԿԱՊ. ԽԱՉԻ ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆԻՆ

Իրենց այցելութեան առթիւ կայանին եղած են՝ հետեւեալ նուէրները.—

Պօղուքլեան ընտանիք (Լիոն) օթոմա–թիք արդուկ մը, 3 լուսամփոփ, 10 շոքոլա եւ 4 ծրար պոնպոն։ Տէր եւ Տիկ. Տիւմոն (Փարիզ) ժիւրայի լիքէօր։ Տէր եւ Տիկին Ոսկորեան (Վալանս) եւ Տէր եւ Տիկին Վ. Ցակոբեան (Տէսին) 50ական Ն. Ֆ.։ Կապ. Խաչի Տէսինի մասնաճիւղ 100 Ն. Ֆ.։ Տէսինի Վասպուրականի Հայրենակց. Միութիւն, Տէր եւ Տիկին Կէնճեան (Տէսին), Տէր և Տիկին Մաճալեան (Փարիզ) 20ական Ն. Ֆ.։ Տէր եւ Տիկին Գարատօղլանեան (Փարիզ) 25 Ն. Ֆ.։ Տէր եւ Տիկ. Ս. Առաքելեան (Տէսին), Տիկին Ա. Փօյաճեան (Տէսին), Պ. Նուպար Գարագաշ (Տէսին), Տէր եւ Տիկին Ա. Օհաննեան (Տէսին), Տէր եւ Տիկին Մովսէս Կարապետեան (Տէսին), Պ. Տօնիկ Փօլատեան (Տէսին), Տիկին Թագուհի Աբրահամեան (Տէսին), Պ. Կարօ Օհանեան (Տէսին) 10ական Ն. Ֆ.։ Փոքրիկն Աճաբոնեան 5 Ն. Ֆ.։ Կայանի չորս աղջիկներ Մալխասեան, Քիւպէլեան, Ֆիլիփ Փօլատ եւ Ղազարեան Արա 17,80 Ն. Ֆ.։

### ՆՈՒԷՐ

Տիկին Եղիսաբէթ Տէր–Ղուկասեան եւ իր Թոռնիկը Մարթին Տէր–Ղուկասեան, իրենց ննջեցեալներու սիրելի յիշատակին, 20 Ն. Ֆ. կը նուիրեն Ֆ. Հ. Կապ. Խաչի Անկէնի մասնաճիւղին։

### ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

#### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

Իտալիոյ նուիրատուներու ցանկին մէջ (Յուլիս 18), Ցարութիւն Ճամճեանի նուիրատուութիւնը պէտք ըլլայ՝ 10.000 լիր (ոչ՝ 5000 ինչպէս հրատարակուած էր) եւ ընդհ. գումարն ալ՝ 348.000 լիր։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբը շընորհակալութեամբ ստացաւ 150 Ն. Ֆ., այրի Տիկին Փերուզ Ծրնկըտրեանէ, փոխան ծաղկեպսակի, հանգուցեալ Բարսեղ Տամլամեանի մահուան տխուր առթիւ։

### ԵՐԵՒԱՆ ՋԱՑՆԱՍՓԻՒՌԻ ԺԱՄԵՐ

Եւրոպայի երկիրները ապրող Հայերուն համար Երեւանի ձայնասփիւռի նոր ալիքները.— Ամէն Չորեքշաբթի եւ Կիրակի առաւօտները ժամը 9ին՝ (13 – 19 եւ 25 մեթր կարճ ալիքներով)։



Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Շէք – Փոսթալի թիւն է.—

C. C. P. PARIS 5460-11







«ԿԱՊՈՅՏ ՕԹԵԱԿ»

(Բ. տպագրութիւն), Սկովտիոյ մատենական կազմակերպութեան առաջին, երկրորդ եւ երրորդ աստիճաններուն մանրամասն ծէսերը եւ արարողութիւնները, Հ. Մ. Համբարձումեանի կողմէ, կը ծախուի միայն գրավաճառ Պ. Բալուեանի մօտ,

43, Rue Richer, Paris (9e), Tél.: PRO.25-46

Գին 3 Ն. Ֆ.։



Imprimerie Spéciale du journal « Haratch »

32, Rue de Trévise. PARIS (9e)

### Հ. Յ. Դ.

ՎԻԷՆ — Հ. Յ. Դ. Աճի կոմիտէի ընդհանուր ընդհ. ժողովը այս շաբաթ երեկոյ ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբի մէջ։ Կարեւոր օրակարգ։



### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Ձեռնարկուներ հիւսուածեղէնի համար, լաւ կարող մը եւ սիւրժըլթէօզ։

Դիմել՝

F. T. N.

195, Rue St.-Denis, PARIS

### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

#### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Պրիւսէլէն այրի Տիկին Աննա Մաթոսեան եւ դուստրը Այտա կը ծանուցանեն թէ իրենց սիրեցեալ ամուսնոյն եւ հօր՝*

*ՆՇԱՆ Կ. ՄԱԹՈՍԵԱՆԻ*

*մահուան տարելիցին առթիւ (մեռած Պէյրութի մէջ) հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, յետ պատարագի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, 15 Ռիւ ժան Կուժոն։*

*Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ։*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Այրի Տիկին Վարդանուշ Կակոյեան (Փիւժէ-սիւր-Արժանս) իր ողբացեալ ամուսնոյն՝ Մարտիրոս Կակոյեանի մահուան տարելիցին առթիւ 50 Ն. Ֆ. կը նուիրէ Սողոմոն Թէհլիրեան սրահին։ (Ստանալ «Յառաջ»էն)։*

### ՆՈՒԷՐՆԵՐ ԿԱՊ. ԽԱՉԻ ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆԻՆ

*Ֆ. Կապ. Խաչի Շրջ. Վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Գ. Զինկիրեանէ 100 Ն. Ֆ. ի նպաստ ժանուկներու օդափոխութեան կայանին։*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր Եկեղեցիի Վարչութիւնը ողբացեալ Իսահակ Տելփոյաճեանի յուղարկաւորութեան առթիւ փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Տէր եւ Տիկին Արտաշէս Մենծիկեան 20 Ն. Ֆ., Այվատեան ընտանիք 5, Կարպիս Աճէմեան 5, Միհրան Սահակեան 5, Տիկ. Կիւլիզար Տելլաքեան 20, Լութֆիկ Վարդեվառեան 10։ Նուիրած են նաեւ Մարսէյլի Աղքատախնամին՝ Տէր եւ Տիկին Ա. Մենծիկեան 15, Քէօլէեան ընտանիք 10, Սէն Թ'Անթուանի Թաղ. Խորհուրդ 30։ Հայ Կապոյտ Խաչին՝ Զիլէքեան ընտանիք 10։ Սէն Ժերոմի եկեղեցիին՝ Տէր եւ Տիկին Միքայէլեան 10, Տէր եւ Տիկ. Նիկողոսեան 10, Գ. Կարապետեան 10։ Սողոմոն Թէհլիրեան սրահին՝ Տէր եւ Տիկ. Ա. Մենծիկեան 15։ (Ստանալ եկեղեցիի Քարտուղարութենէն)։*

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Մարսէյլի Մայր Եկեղեցիին համար կ'ուզուի պաշտօնեայ մը։ Գոհացուցիչ վարձատրութիւն։ Դիմել եկեղեցի։*

### ԿՈՉ՝ ՄԱՐՍԷՅԼԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ ՏԱՐԵՑ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

—o—

*Փարիզի Աղքատախնամի վարչութիւնը, Մարսէյլի Աղքատախնամէն, ինչպէս նաեւ Հարաւային Ֆրանսայի Հայոց Առաջնորդարանէն, ստացած է առանձին նամակներ, որոնցմով տրամադրութիւն կը յայտնեն, իրենց օժանդակութեան բաժինը բերել, մեր Հանգստեան տունները ընդունուելու կոչուած ծեր թեկնածուներու պաշտօնական գործողութեանց վերաբերեալ աշխատանքներուն։*

*Արդ, Փարիզի Աղքատախնամի վարչութիւնը սիրով ընդառաջ երթալով վերոյիշեալ մարմիններուն խնդրանքին, կը ծանուցանէ ներկայիս, Մարսէյլի եւ շրջանի բոլոր այն ծերերուն, որոնք պիտի փափաքէին Սէն Ռաֆայէլի, Մոնմորանսիի եւ Անտիպի հանգստեան տուները մտնել, փութան իրենց դիմումը կատարել Մարսէյլի Աղքատախնամին կամ Հարաւային Ֆրանսայի Հայոց Առաջնորդարանը, որոնք հարկ եղած պաշտօնական թուղթերու գործողութիւնները կատարելով, ամէն դիւրութիւն պիտի ընծայեն։*

*Հասցէ՝ Աղքատախնամի՝*

339, Avenue du Prado, Marseille

*Հայոց Առաջնորդարան՝*

26, Rue des Convalescents, Marseille

ՓԱՐԻԶԻ ԱՂՔ.Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ*

1961–1962 *ուսումնական տարին կը բացուի Երկուշաբթի Սեպտեմբեր 18ին։ Վարժարանի Տնօրէնութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նոյն թուականին անյապաղ վարժարան առաջնորդեն իրենց զաւակները։*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Չէք — Փոսթալի թիւն է.—*

C. C. P. PARIS 5460-11

## ՑԱՐԱԼԷԶՆԵՐՈՒ ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Ա. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԳԻՆ 7 Ն. Ֆ.

Դիմել՝ ՅԱՌԱՋԻՆ

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Հայաստանէն Եղիազարեան Թուրքէն Աղաջանի ծնած Ալեքրէկով շրջանի Ագաղեկ գիւղը կը փնտռէ իր եղբայրները Նիկողէմոս եւ Արշալոյս Եղիազարեան։*

*Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել հետեւեալ հասցէին.*

M. Y. Jamgotchian
150, Rue de Chatou,
COLOMBES (Seine).

## ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Նահանջը Առանց Երգի

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋին

## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

ԴԷՊԻ

## ԵՐԵՒԱՆ

Երեք շաբաթը անգամ մը

ՆԱՒՈՎ

ՄԱՐՍԷՅԼԷՆ ուղղակի դէպի ԵՐԵՒԱՆ

*Երթուդարձի գիներն են, կերակուրով լերադարձին կարելի է Վենետիկ իջնել*

13 ՕՐ ԵՐԵՒԱՆ

*Պանդոկի մէջ բնակութեամբ եւ սնունդով*

| | |
|---|---|
| Բ. կարգ | 3046 Ն. Ֆ. |
| Գ. կարգ | 2506 Ն. Ֆ. |

*ԶԵՂՉ խմբովին ճամբորդողներուն։*

*ՈՒՂԵՏՈՒՑՔԻ իրաւունք, անձ գլուխ, 150 քիլօ՝ Բ. կարգի եւ 100 քիլօ՝ Գ. կարգի ճամբորդներուն,*

Նոյն ճամբորդութիւնը օդանաւով կամ երկաթուղիով։

*Մեր գրասենեակը կը զբաղի նաեւ դէպի Ամերիկա, Սուրիա եւ այլ ճամբորդութիւններով,*

ԴԻՄԵԼ՝

ԺԱՆ-ԵՂԻՇԷ ԱՐՁՈՒՄԱՆԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼ
48, Rue de la République
Tél.: 20.47.22
MARSEILLE

ՓԱՐԻԶ
Մասնաճիւղ
7, Rue Auber, 7
Tél : RIC. 63-69
PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

*ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէի ընդհանուր ընդհ. ժողովը այս շաբաթ երեկոյ ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբի մէջ։ Կարեւոր օրակարգ։*

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 – 1962 տարեշրջանի արձանագրութիւնները բաց են. ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է դիմեն հաստատութեան տնօրէնութեան։*

*Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ։ Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ.*

*Ա) Ֆրանսականը, որ տարացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պրըվէի եւ պագալորէայի։*

*Բ) Հայկականը, որ կ'օժտէ աշակերտուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ։*

*Աշակերտուհիներ կ'ընդունին 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան.—*

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)
*Հեռաձայն* 927 – 01,72

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾՆՈՒԻ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Ընկ. Ալլէն Փափազեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ ընկեր Տրդատ Աբանեանի :

## ՆՈՒԷՐ

Օրիորդ Ա. Մ. իր ծնողքին սիրելի յիշատակին համար 10 Ն. Ֆ. կը նուիրէ Կապայտ Խաչի Անկէնի մասնաճիւղին օգնութեան գործին :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Կրընոպլի վարչութիւնը, մրցանակաբաշխութեան հանդէսին առթիւ շնորհակալութեամբ ստացած է 10 Ն. Ֆ. Պ. Խ. Աւագեանէ :

## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ

Վիէննայի Մխիթարեան Միաբանութեան յոբելենական հանդիսութեանց առթիւ հայածէս պատարագը կը ձայնասփռուի այս կիրակի առաւօտ ժամը 9,30ին, միջին ալիք 203,4 մեթր :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Մարսէյլի Մայր Եկեղեցիին համար կ'ուզուի պաշտօնեայ մը : Գոհացուցիչ վարձատրութիւն : Դիմել եկեղեցի :

339, Avenue du Prado, Marseille

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայաստանէն Եղիազարեան Թուրէն Ազաջանի ծնած Աղիզրէկով չրջանի Ազադեկ գիւղը կը փնտռէ իր եղբայրները Նիկողէմոս եւ Արշալոյս Եղիազարեան :

Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել հետեւեալ հասցէին.

M. Y. Jamgotchian
150, Rue de Chatou,
COLOMBES (Seine).



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)



## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ*

1961–1962 ուսումնական տարին կը բացուի Երկուշաբթի Սեպտեմբեր 18ին : Վարժարանի Տեսչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նոյն թուականին անյապաղ վարժարան առաջնորդեն իրենց զաւակները :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Շէքը – Փոսթալի թիւն է.—
C. C. P. PARIS 5460-11





## Հ. Յ. Դ.

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէի ընդհանուր ընդհ. ժողովը այս շաբաթ երեկոյ ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբի մէջ : Կարեւոր օրակարգ :

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 – 1962 տարեշրջանի արձանագրութիւնները բաց են. ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է դիմեն հաստատութեան տնօրէնութեան :

Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ : Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ.

Ա) Ֆրանսականը, որ տառացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արգիլեան բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պռըվէի եւ պագալօրէայի :

Բ) Հայկականը, որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ :

Աշակերտուհիներ կ'ընդունին 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան .—

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)
Հեռաձայն 927 – 01,72

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :